ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 9 ՄԱՅԻՍ 1950

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

ՍՍՌՄ ՖԻՆԱՆՍՆԵՐԻ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ . . . . . 1
ԱՎԵԼԻ ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵՆՔ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ . . . . . 2

Օգտագործիր գրույցի ժամանակ

ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՓԱՅԼՈՒՆ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐԸ . 9

Ագիտացիոն աշխատանքի փորձից

ԼԵՆԻՆԱԿԱՆԻ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀԱՎԱՔՈՒՄ . 21
Կ. ՊՈՂՈՍՅԱՆ.— Պայքարում են բամբակի բարձր բերքի համար . . . . 44
ՆՈՐ ԳՐՔԵՐ . . . . . . . . . 50

---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78։*

---

# ՍՍՌՄ ՖԻՆԱՆՍՆԵՐԻ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

1950 թվականի մայիսի 3-ին 20 միլիարդ ռուբլի գումարով բաց թողնված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հինգերորդ պետական փոխառությունը մինչև մայիսի 8-ի օրվա վերջը իրացվել էր 27 միլիարդ 003 միլիոն 608 հազար ռուբլով, 7 միլիարդ 003 միլիոն 608 հազար ռուբլու գերազանցումով։

Փոխառության սահմանված գումարն զգալի չափով գերազանցելու կապակցությամբ, ՍՍՌՄ Ֆինանսների մինիստրությունը, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ցուցումի հիման վրա, կարգադրություն է արել 1950 թվականի մայիսի 10-ից ամենուրեք դադարեցնել փոխառության բաժանեգրությունը։

ՍՍՌՄ Ֆինանսների մինիստր Ա. ԶՎԵՐԵՎ

9 մայիսի, 1950 թ.

-O-

41-42

463-52

# ԱՎԵԼԻ ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵՆՔ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

Լենինի-Ստալինի պարտիայի գլխավորությամբ մեր երկրում լայն կերպով ծավալվել է սոցիալիստական մրցությունը, որը կյանքի է կոչել միլիոնավոր աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը։ Սոցիալիստական մրցությունը սովետական ժողովրդի հարազատ գործն է, կենսական պահանջ։ Հանրագումարի բերելով մեր հաղթանակները առաջին հնգամյակի կատարման գործում, ընկեր Ստալինը նշել է այն հիմնական ուժերը, որոնք ապահովեցին այդ պատմական նվաճումները։ «Այդ, նախ. բանվորների ու կոլտնտեսականների միլիոնավոր մասսաների ակտիվությունն ու անձնվիրությունն էր,— ասել է ընկեր Ստալինը,— խանդավառությունն ու ձեռներեցությունը, մասսաներ, որոնք ինժեներա-տեխնիկական ուժերի հետ միասին հսկայական էներգիա զարգացրին սոցիալիստական մրցության ու հարվածայնության ծավալման նկատմամբ։ —Տարակույս չի կարող լինել, որ առանց այդ



հանգամանքի մենք չէինք կարողանա նպատակի հասնել, չէինք կարողանա ոչ մի քայլ առաջ շարժվել»։

Սոցիալիստական մրցությունը ցույց է տվել իր մեծ կենսունակությունը, որպես ժամանակակից անպարտելի շարժումի, որպես սոցիալիզմի կառուցման կոմունիստական մեթոդի։ Սոցիալիստական մրցության ծավալման, ստախանովյան աշխատանքի նորանոր մեթոդների ներդրման շնորհիվ մեր երկրի աշխատավորները հաջողությամբ կատարում են կոմունիզմի կառուցման ստալինյան հանճարեղ նախագծումները, հետպատերազմյան նոր հնգամյա պլանը։ Դրա փայլուն ապացույցներից մեկն է՝ ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլանի 1950 թվի առաջին եռամսյակի կատարման արդյունքների մասին։ Այդ հաղորդագրությունը պերճախոս և համոզիչ կերպով վկայում է սոցիալիզմի երկրի էկոնոմիկայի և կուլտուրայի նորանոր ծաղկումը, Սովետական Միության աշխատավորների կենսամակարդակի անշեղ բարձրացումը։ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտա-

դրանքը, ամբողջությամբ վերցրած, 1950 թվականի առաջին եռամսյակում, 1949 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ աճել է 22 տոկոսով։ Զգալիորեն ավելացել է արդյունաբերական արտադրանքի կարևորագույն բոլոր տեսակների արտադրությունը։ Արտադրանքի շատ տեսակների գծով եռամսյակային պլանը գերակատարվել է։ Աճել է երկաթուղային ու ծովային տրանսպորտի բեռնաշրջանառությունը։

Սոցիալիստական մրցության և ստախանովյան շարժման լայն ծավալմամբ նոր հնգամյա պլանի կատարման ասպարեզում խոշոր նվաճումներ են ձեռք բերել նաև Սովետական Հայաստանի աշխատավորները։ Հայկական ՍՍՌ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1950 թվականի առաջին եռամսյակում, 1949 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ, աճել է 27 տոկոսով։

Ծավալելով սոցիալիստական մրցությունը, կոլխոզային գյուղացիությունը անցյալ տարվա համեմատությամբ այս տարի ավելի լավ նախապատրաստվեց ու անցկացրեց գարնան գյուղատնտեսական աշխատանքները։ Մինչև 1950 թվականի ապրիլի 25-ը Հայկական ՍՍՌ կոլխոզները կատարել էին



2,5 անգամ ավելի ցանք, քան 1949 թվականի նույն ժամկետին։

Սոցիալիստական մրցության և ստախանովյան շարժման ծավալման, արտադրության մեջ աշխատանքի նոր, առաջավոր մեթոդների ներդրման գործում խոշոր դեր ու անելիքներ ունեն ագիտատորները։ Գտնվելով արտադրության մեջ, անմիջապես շփվելով բանվորների հետ, ագիտատորները հնարավորություն ունեն նրանց հասցնելու բոլշևիկների պարտիայի և Սովետական կառավարության կողմից մեր Հայրենիքի հետագա ծաղկման ու բարգավաճման համար ձեռնարկված նախագծումները, օգնել բանվորներին ավելի լայնորեն ծավալելու սոցիալիստական մրցությունը, կիրառելու աշխատանքի նոր, առաջավոր մեթոդներ։ Այն ձեռնարկությունում, ուր ագիտկոլեկտիվը կատարում է իր առաջ դրված խնդիրները, ուր ագիտացիոն-մասսայական աշխատանքը դրված է իր բարձրության վրա, այնտեղ ապահովված է սոցիալիստական մրցության և ստախանովյան շարժման ծավալումը։

Այժմ մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները, արձագանքելով առաջավոր ձեռնարկությունների՝ Երևանի Կիրովի անվան գործարանի, Էլեկտրամեքենաշինա-

կան գործարանի, Ավտոդողերի գործարանի, Զանգեզուրի Հանքվարչության, Երևանի Կաշվի գործարանի, Մահուդի ֆաբրիկայի, Երկաթուղու Երևանի բաժանմունքի և Լենինականի Գուլպատրիկոտաժ ֆաբրիկայի կոլեկտիվների դիմումին, սոցիալիստական մրցություն են ծավալել այս տարվա պլանը կատարել մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատման 30-ամյակի օրը՝ նոյեմբերի 29-ը։ Սովետական Հայաստանի 30-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցության առաջամարտիկներ պետք է հանդիսանան ագիտատորները։

Սոցիալիստական մրցության ծավալման, արտադրության բարձրացման համար պայքար ծավալելու լավագույն օրինակ են տալիս Երևանի Կիրովի անվան և Ավտոդողերի գործարանների, Լենինականի Տեքստիլ կոմբինատի, Գուլպա-տրիկոտաժ ֆաբրիկայի ագիտատորները։ Թե ինչպիսի փայլուն արդյունքներ կարող է տալ արտադրողականության բարձրացման, հումքի տնտեսման, արտադրանքի որակի բարձրացման համար մղվող կոնկրետ, նպատակասլաց ագիտացիոն-մասսայական աշխատանքը, այդ մասին բազմաթիվ պերճախոս օրինակներ բերին Լենինականի արդյունաբերական ձեռ-



նարկությունների ագիտատորները, վերջերս տեղի ունեցած իրենց հավաքում, որի նյութերը տպագրված են մեր ժուռնալի այս համարում։ Այդպիսի հաջողությունների կարող են հասնել մեր ռեսպուբլիկայի բոլոր արդյունաբերական ձեռնարկությունների ագիտատորները։ Անհրաժեշտ է, որ նրանք կարողանան բանվորներին մատչելի կերպով բացատրել մեր արդյունաբերության առաջ բոլշևիկյան պարտիայի ու Սովետական կառավարության դրած խնդիրները, դրանք կոնկրետ կերպով կապելով իրենց ձեռնարկության աշխատանքների հետ։ Հարկավոր է, որպեսզի ագիտատորները արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման, արտադրանքի որակի բարձրացման, հումքի խնայողության և արտադրության հետ կապված այլ հարցերի մասին բանվորների հետ խոսեն ոչ թե ընդհանրապես, վերացականորեն այլ հենց իրենց գործարանի, ցեխի, բրիգադայի բանվորների աշխատանքից վերցրած կոնկրետ փաստերով և օրինակներով։

Գտնվելով անմիջապես արտադրության մեջ, բանվորների կողքին, ագիտատորը պետք է պայքար կազմակերպի աշխատանքային յուրաքանչյուր րոպեի նպատակասլաց

օգտագործման համար, յուրաքանչյուր կիլոգրամ հումքի, վառելիքի, էլեկտրաէներգիայի խնայողության համար, միայն բարձրորակ արտադրանք տալու համար։

Իրենց առաջ դրված այս խնդիրները կատարելու համար մեր ագիտատորները լայնորեն պետք է օգտագործեն արտադրության առաջավորների, նորարարների լավագույն փորձը, լայնորեն մասսայականացնեն ու ներդնեն այդ փորձն իրենց ցեխում կամ բրիգադայում։ Արտադրության նորարարների աշխատանքի մեթոդների կիրառմամբ է, որ Լենինականի տեքստիլ կոմբինատի, Գուլպատրիկոտաժ ֆաբրիկայի, Երևանի Ավտոդողերի գործարանի ագիտատորները հասել են մեծ հաջողությունների։

Սոցիալիստական ստեղծարար համաժողովրդական մրցությունը մեր առաջընթացի հզոր գործոնն է։ Պարտիական կազմակերպությունների կողմից գլխավորվող ագիտկոլեկտիվների խնդիրն է՝ ավելի լայնորեն ծավալել մրցությունը և ստախանովյան շարժումը, օգնել հետ մնացող բանվորներին հասնելու առաջավորների մակարդակին, հաջողությամբ կատարելու հետպատերազմյան նոր հնգամյա պլանը։





## ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՓԱՅԼՈՒՆ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐԸ

ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական Վարչության Հաղորդագրությունը՝ «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլանի 1950 թվականի առաջին եռամսյակի կատարման արդյունքների մասին» վառ կերպով վկայում է սովետական ժողովրդի նոր հիանալի հաղթանակների մասին։ Այդ Հաղորդագրությունը մեկ անգամ ևս ցույց է տալիս սովետական միլիոնավոր մարդկանց ջերմ հայրենասիրությունը, նրանց աշխատանքային նոր սխրագործությունը հետպատերազմյան ստալինյան հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար մղվող համաժողովրդական պայքարում։ Դրանք սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի նոր վերելքի, սովետական երկրի աշխատավորների կենսամակարդակի անշեղ բարձրացման փայլուն ցուցանիշներն են։

Դեռևս 1949 թվականի վերջում մեր արդյունաբերությունը համախառն արտադրանքի թողարկման գծով գերազանցեց 1950 թվի համար հնգամյա պլանով սահմանված մակարդակը։ Հնգամյակի վերջին տարվա՝ 1950 թվականի առաջին եռամսյակում անշեղ կերպով աճեց արդյունաբերական արտադրանքի թողարկումը։ Սովետական Միության ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը, ամբողջությամբ վերցրած, 1950 թվականի առաջին եռամսյակում աճել է 22 տոկոսով՝ համեմատած 1949 թվականի առաջին եռամսյակի հետ։

Զգալիորեն ավելացել է արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրությունը։ Մեր էկոնոմիկայի այնպիսի առաջատար ճյուղեր, ինչպիսին մետալուրգիան է, էլեկտրաէներգիայի մշակությունը, վառելանյութի արտադրությունը, մեքենաշինությունը, անշեղ կերպով բարձրացել են։ 1950 թվականի առաջին եռամսյակում, 1949 թվականի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ քարածխի հանույթը աճել է 12 տոկոսով, նավթի հանույթը՝ 16 տոկոսով, չուգունի ձուլումը՝ 14, պողպատինը՝ 17, գլանվածքինը՝ 18, էլեկտրոէներգիայի արտադրությունը՝ 18



տոկոսով։ Այդ նույն ժամանակաշրջանում զգալի չափով աճել է մեքենաշինությունը. շոգետուրբինների արտադրությունն աճել է 3,6 անգամ, ինքնաբեռնիչներինը՝ 8,2 անգամ, մանվածքային և գործվածքային մեքենաներինը՝ 100 տոկոսով։ Հսկայական չափով աճել է գյուղատնտեսական, տրանսպորտային մեքենաշինությունը, գունավոր մետաղների, էլեկտրամոտորների, գնդիկավոր առանցքակալների արտադրությունը։

Զգալիորեն աճել է բնակչության համար լայն սպառման իրերի ու ապրանքների թողարկումը։ Արդյունաբերության և տրանսպորտի զարգացման ասպարեզում ձեռք են բերվել խոշոր հաջողություններ աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղղությամբ։

1950 թվականի առաջին եռամսյակում պլանը գերակատարվել է արդյունաբերական ապրանքների շատ տեսակների գծով։ Պլանից ավելի արտադրվել են զգալի քանակությամբ էլեկտրաէներգիա, գլանվածքի մի քանի տեսակներ, մի շարք գունավոր մետաղներ, տրանսֆորմատորներ, մետաղահատ դազգահներ, կաբելային իրեր, քիմիա-

կան նյութեր, կաուչուկ, գործվածքներ, պարենային մթերքներ և այլն։

Զգալի կերպով աճել է երկաթուղային և ծովային տրանսպորտի բեռնաշրջանառությունը։ Երկաթուղային տրանսպորտում 1950 թվականի առաջին եռամսյակում, 1949 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, բոլոր բեռների օրական միջին բեռնումը աճել է 13 տոկոսով, իսկ ծովային տրանսպորտի բեռնաշրջանառությունը՝ 13 տոկոսով։

Շինարարական ինդուստրիայի հետագա զարգացման և սարքավորման ու շինանյութերի արտադրության զգալի ավելացման շնորհիվ, բոլոր կապիտալ աշխատանքների ընդհանուր ծավալը ժողովրդական տնտեսության մեջ 1950 թվականի առաջին եռամսյակում, 1949 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ, ավելացել է 22 տոկոսով։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման ուղղությամբ։ Կենսագործելով պարտիայի և կառավարության որոշումները կոլխոզային աշխատավորները անդուլ պայքար են մղում սոցիալիստական հողագործության և հանրային անասնաբուծության ավելի



բարձր զարգացման համար։ Այդ մասին է վկայում թեկուզ այն փաստը, որ կոլխոզները այս տարի ավելի լավ կազմակերպեցին գարնանացանի նախապատրաստումն ու անցկացումը, քան անցյալ տարի։

1950 թվին սովխոզները, մեքենա-տրակտորային կայանները և կոլխոզները գարնան դաշտային աշխատանքները սկսեցին տեխնիկապես է՛լ ավելի լավ զինված, քան 1949 թվին։ Այս տարվա ապրիլի 1-ին տրրակտորների քանակը, անցյալ տարվա նույն ժամանակի համեմատությամբ, ավելացել է 19 տոկոսով, տրակտորային գութաններինը՝ 20 տոկոսով, շարքացանններինը՝ 24 տոկոսով և կուլտիվատորներինը՝ 18 տոկոսով։ Դաշտ է տեղափոխված մեկ ու կես անգամ ավելի պարարտանյութ։

Լուրջ հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսական մասսայական կադրեր պատրաստելու բնագավառում։ Կարճատև դասընթացների միջոցով պատրաստվել և վերապատրաստվել են ավելի քան 450 հազար տրակտորիստներ ու տրակտորային բրիգադների բրիգադիրներ, գյուղատնտեսության մեքենայացման ու էլեկտրիֆիկացման մեծ թվով այլ աշխատողներ։

Սովետական Միության հարավային շըր-

ջաններում հաջողությամբ և սեղմ ժամկետում ավարտվեց հասկային կուլտուրաների գարնանացանը: Անցյալ տարվա համեմատությամբ ավելի շուտ սկսվեց և արագությամբ առաջ է գնում տեխնիկական կուլտուրաների՝ բամբակի, շաքարի ճակնդեղի, արևածաղկի ցանքը: Մինչև ապրիլի 15-ը կատարվել է 5,4 միլիոն հեկտարով ավելի գարնանացան կուլտուրաների ցանք, քան 1949 թվի նույն ժամանակում:

Գյուղատնտեսության աշխատողները հսկայական ոգևորությամբ են իրագործում բնության վերափոխման ստալինյան մեծ պլանը: Այս տարի այդ աշխատանքները ավելի լայն մասշտաբով ծավալելու համար նախապատրաստական լուրջ աշխատանքներ են կատարվել: Մինչև 1950 թվի ապրիլի 15-ը անտառտնտեսությունները, կոլխոզներն ու սովխոզները ՍՍՌՄ եվրոպական մասի տափաստանային և անտառատափաստանային շրջաններում ցանել և տնկել են 307 հազար հեկտար դաշտապաշտպան անտառատնկիներ:

Այս տարվա առաջին եռամսյակում կոլխոզներն ու սովխոզներն ավելացրին անասունների գլխաքանակը: Այդ բանին նրանք հասան անշեղորեն կենսագործելով հանրա-



յին անասնաբուծության զարգացման 1949—51 թվականների եռամյա պլանի մասին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը: 1950 թվի առաջին եռամսյակի վերջում, 1949 թվի առաջին եռամսյակի վերջի համեմատությամբ, կոլխոզներում հանրային անասնաբուծության գլխաքանակը աճել է խոշոր եղջերավոր անասուններինը՝ 18 տոկոսով, ձիերինը՝ 22 տոկոսով, ոչխարներինը և այծերինը՝ 18 տոկոսով, խոզերինը՝ 65 տոկոսով: Նույն ժամանակաշրջանում՝ սովխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 16 տոկոսով, ոչխարներինը և այծերինը՝ 16 տոկոսով, խոզերինը՝ 51 տոկոսով և ձիերինը՝ 22 տոկոսով:

Սովետական Կառավարությունը և բոլշևիկների պարտիան շարունակ հոգ են տանում ժողովրդի բարեկեցության բարելավման, նրա կենսամակարդակի է՛լ ավելի բարձրացման մասին: Այդ բանի ամենացայտուն արտահայտությունն է հանդիսանում 1950 թվի մարտի 1-ից մասսայական սպառման պարենային և արդյունաբերական ապրանքների պետական մանրածախ գների երրորդ իջեցումը, որի ռեալ արդյունքները զգում է սո-

վետական յուրաքանչյուր քաղաքացի։ Գների նոր իջեցման շնորհիվ բարձրացավ ռուբլու գնողունակությունը, դրա հետ մեկտեղ բարձրացավ բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձը, գյուղացիների անձնական եկամուտները։

Գնալով լայն ծավալ է ստանում սովետական առևտուրը։ 1950 թվի առաջին եռամսյակում բնակչությանը, համադրելի գներով, 25 տոկոսով ավելի շատ ապրանք է վաճառվել, քան 1949 թվի առաջին եռամսյակում, ըստ որում, պարենային ապրանքների վաճառքն ավելացել է 19 տոկոսով, արդյունաբերական ապրանքներինը՝ 35 տոկոսով։

Մասսայական սպառման ապրանքների պետական մանրածախ գների իջեցումը իր հերթին բարերար ազդեցություն գործեց կոլխոզային շուկաներում գյուղատնտեսական մթերքների գների իջեցման վրա։

Սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման հետ միասին աճում է նրա կուլտուրական մակարդակը, երկրում լայն ծավալ է ստանում կուլտուրական շինարարությունը, ընդլայնվում է առողջապահական ցանցը։

1950 թվի առաջին եռամսյակում Սովետական Միության բարձրագույն ուսումնական



հաստատություններում սովորում էր 1.132 հազար ուսանող, հարյուր հազար մարդով ավելի, քան 1949 թվի առաջին եռամսյակում, տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում, տեխնիկումներում և այլ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորում էր 36,4 միլիոն մարդ, կամ գրեթե 2 միլիոն մարդով ավելի, քան 1949 թվի առաջին եռամսյակում։

ՍՍՌՄ-ում բոլոր սովորողների թիվը անցյալ տարի կազմում էր ավելի քան 55 միլիոն մարդ։

1950 թվի մարտ ամսին հրապարակվեց կառավարության որոշումը՝ Ստալինյան մրցանակների հերթական շնորհման մասին 1949 թվի համար։ Գիտության, գյուտարարության, գրականության, արվեստի ասպարեզում աչքի ընկնող աշխատանքների համար Ստալինյան մրցանակի լաուրեատի կոչման արժանացան 1.610 գիտնականներ, ինժեներներ, գյուղատնտեսներ, գրականության և արվեստի աշխատողներ, բանվորներ և գյուղատնտեսության առաջավորներ։

Այս տարվա առաջին եռամսյակում ՍՍՌՄ-ում կար ավելի քան 300 հազար գրադարան (պետական և հասարակական) 600 միլիոն օրինակ գրքով, չհաշված քաղաքացի-

ների անձնական գրադարաններում եղած գրքերը: 1950 թվին մեր երկրում գործում էին ավելի քան 127 հազար կուլտուրայի պալատներ ու տներ, ակումբներ ու խրճիթ-ընթերցարաններ և 100 հազարից ավելի կարմիր անկյուններ:

Կինոթատրոնների և շրջիկ կինոների թիվը 1949 թվի առաջին եռամսյակի համեմատությամբ ավելացել է 7,3 հազարով: Մեզ մոտ արագ տեմպերով է սկսում աճել ֆիզկուլտուրային շարժումը:

Եթե մեզ մոտ՝ Սովետական Միությունում ժողովրդական տնտեսությունը, կուլտուրան, ժողովրդի բարեկեցությունը անընդհատ վերելք է ապրում, գնալով ամրապնդվում է մեր Մեծ Հայրենիքի ռազմա-տնտեսական հզորությունը, ապա կապիտալիստական երկրներում գնալով սպառնալից չափերով աճում է տնտեսական ճգնաժամը: Կատաստրոֆիկ կերպով իջնում է արտադրությունը, աճում է գործազրկությունը, ուժեղ թափով բարձրանում են ապրանքների գները, ուժեղանում է աշխատավոր մասսաների թշվառությունը, իջնում է նրանց գնողունակությունը:

Սովետական մարդիկ չեն հանգստանում իրենց ձեռք բերած նվաճումներով: Ծավալելով աշխատանքի սոցիալիստական մեթոդ-



ներն ու իրենց ստեղծագործական նախաձեռնությունները նրանք ձգտում են կրկնապատկել այդ նվաճումները:

***

Հրապարակվել է նաև Հայկական ՍՍՌ Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը՝ «Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1950 թվականի առաջին եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին»: Այդ հաղորդագրությունը ցայտուն կերպով արտահայտում է այն նվաճումները, որոնք ձեռք են բերել մեր ռեսպուբլիկայի աշխատավորները հետպատերազմյան ստալինյան հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար:

Հայկական ՍՍՌ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1950 թվականի առաջին եռամսյակում՝ 1949 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ աճել է 27 տոկոսով: Ծավալվող սոցիալիստական մրցության շնորհիվ ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները առաջին եռամսյակում տվին ավելի շատ պղնձի հանքաքար, էլեկտրաէներգիա, ալյումին, էլեկ-

տրապարագաներ, տրանսֆորմատորներ, կոմպրեսորներ։ Զգալիորեն աճել է նաև լայն սպառման ապրանքների և առաջին անհրաժեշտության առարկաների արտադրությունը, որի հետևանքով բնակչությունը անցյալ եռամսյակում ստացավ ավելի շատ բրդյա, բամբակյա ու մետաքսյա գործվածքներ, տրիկոտաժ, ալյումինե ամանեղեն, մակարոնեղեն, օճառ և այլ ապրանքներ։

Համախառն արտադրանքի պլանը արտադրանքի կարևորագույն տեսակների գծով նատուրայով կատարել և գերակատարել են. Ջանգեզուրի հանքվարչությունը, Ավտոդողերի գործարանը, Կիրովի անվան գործարանը, էլեկտրամեքենաշինական գործարանը, Հայէներգոն, Կարբիդի գործարանը, Մուլիտի գործարանը, Կաբելի գործարանը, Սևանի հիդրոէլեկտրակայանը, «Հայբարիտը», Լենինականի Բամբակեղենի կոմբինատը, Լենինականի Գուլպա-տրիկոտաժի ֆաբրիկան, Կորդի ֆաբրիկան, Մետաքսագործական ֆաբրիկան, Մահուդի ֆաբրիկան, Կիրովականի գործվածքային ֆաբրիկան, Կաշվե-գալանտերիայի ֆաբրիկան, Լայն սպառման մետաղյա իրերի գործարանը, Երևանի Սառցարանը, Իջևանի աղոցարանը, Կոշկեղենի առաջին և 2-րդ ֆաբրիկաները, Կարի 1-ին ֆաբրիկան։



Կենսագործելով պարտիայի ու կառավարության որոշումները, նշանակալից հաջողություններ են ձեռք բերել նաև գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողները, կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները։

Այդ մասին է վկայում այն փաստը, որ այս տարի կոլխոզները լավ կազմակերպեցին գարնանացանի նախապատրաստումն ու անցկացումը, քան անցյալ տարի։ Գյուղատնտեսական մեքենաների նորոգման պլանը կոլխոզները կատարել են հետևյալ կերպ՝ գութաններինը՝ 100,9 տոկոսով, շարքացաններինը՝ 100,2 տոկոսով, կուլտիվատորներինը՝ 100,2 տոկոսով։ Մեքենա-տրակտորային կայանները մինչև ապրիլի մեկը տրակտորների աշնան-ձմեռային նորոգման պլանը կատարել են 103,7 տոկոսով։ 1950 թվականի առաջին եռամսյակի ընթացքում ագրոմինիմումի մասսայական դասընթացներն ավարտել են 21 հազար կոլխոզնիկ։

Մինչև 1950 թվականի ապրիլի 25-ը Հայկական ՍՍՌ կոլխոզները կատարել են 2,5 անգամ ավելի ցանք, քան 1949 թվականի նույն ժամկետին։ Հաջող է անցնում աշնանացանի ցաքանումը և լրացուցիչ սնուցումը, հաջող է կատարվում խաղողի ու պտղատու

այգիների գարնանային տնկումը և մշակումը։

Կապիտալ աշխատանքների ծավալը 1950 թվականի առաջին եռամսյակում, նախորդ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ աճել է 21 տոկոսով։

Պարտիան, կառավարությունը և անձամբ ընկեր Ստալինը մշտապես հոգ են տանում սովետական մարդկանց կյանքի պայմանները բարելավելու, նրանց նյութական բարեկեցությունը բարձրացնելու մասին։ Այդ վառ կերպով վկայում է այս տարվա մարտի 1-ին կատարված՝ պարենամթերքի և արդյունաբերական ապրանքների պետական մանրածախ գների՝ թվով երրորդ իջեցումը, որի հետևանքով զգալիորեն աճեց բնակչության գնողունակությունը, հետևապես և ապրանքների վաճառքը պետական ու կոոպերատիվ առևտրի ցանցում։ Մանրածախ ապրանքաշրջանառությունն այս տարվա մարտին, նախորդ ամսվա համեմատությամբ, աճեց 26,2 տոկոսով։

Պարենային և արդյունաբերական ապրանքների պետական մանրածախ գների երրորդ իջեցումը, որն անցկացվեց 1950 թվականի մարտի մեկից, առաջ բերեց ապրանքների վաճառքի զգալի ավելացում պետական և կոոպերատիվ առևտրի ասպարեզում։ Մանրածախ ապրանքաշրջանառությունը 1950 թվականի մարտին, համեմատած 1950 թվականի փետրվարի հետ, աճեց 26,8 տոկոսով։



Պետական գների իջեցման կապակցությամբ, ռեսպուբլիկայի կոլխոզային շուկաներում սիստեմատիկաբար իջնում են պարենային ապրանքների գները։

Սովետական ժողովուրդը վստահ է իր ուժերի և վաղվա օրվա նկատմամբ։ Նա լիովին համոզված է, որ իր ձեռնարկումները, իր ընդունած պլանները հաջողությամբ կկատարի, քանի որ իրեն օգնում ու ղեկավարում է բոլշևիկների փառապանծ պարտիան, ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր Ստալինը։

—O—

# ԼԵՆԻՆԱԿԱՆԻ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀԱՎԱՔՈՒՄ

Վերջերս Լենինականում տեղի ունեցավ քաղաքի արդյունաբերական խոշոր ձեռնարկությունների ագիտատորների հավաք: Հավաքում ագիտատորները պատմեցին այն մասին, թե ինչպես են օգնում բանվորներին արտադրողականության բարձրացման, ստախանովյան շարժման նորանոր ձևերի ու մեթոդների կիրառման ասպարեզում:

Հավաքը քննության առավ նաև «Ագիտատորի բլոկնոտ»-ի կողմից ագիտատորներին ցույց տրվող օգնության հարցը: Ելույթ ունեցողները նշեցին մի շարք թերություններ և կոնկրետ հարցեր առաջադրեցին խմբագրությանը՝ դրանք հետագայում լուսաբանելու համար:

Ստորև տպագրում ենք ագիտատորների՝ հավաքում ունեցած ելույթներից մի քանիսը:



# ԸՆԿԵՐԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅԱՆ ՓԱՅԼՈՒՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

Տեքստիլ կոմբինատի Գործվածքային ֆաբրիկայի 3-րդ կորպուսի ագիտատոր Խ. ՏՈՆՈՅԱՆԻ ելույթից:

*Մեր երկրում յուրաքանչյուր օր հայտնի են դառնում արտադրության առաջավորների նորանոր անուններ, առաջավորներ, որոնք իրենց օրինակով, նորարարական առաջարկություններով նոր աստիճանի են բարձրացնում ստախանովյան շարժումը: Մեր, ագիտատորներիս խնդիրն է՝ ժամանակին արձագանքել այդ առաջարկություններին, խորը կերպով ուսումնասիրել նրանց էությունը և օգնել բանվորներին աշխատանքի այդ նոր մեթոդները կիրառելու:*

*Այդպիսի հայրենասիրական առաջարկությունների թվին է պատկանում, օրինակ՝ իրենց պլանները թերակատարող բանվորներին ամենօրյա ընկերական օգնություն կազմակերպելու, բոլոր բանվորներին առաջավոր*

դարձնելու առաջարկությունը։ Այդ նախաձեռնությանը մեր կոմբինատում առաջինը արձագանքեց անվանի ստախանովականուհի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Եվդոկիա Լիխաչևան, տալով իր հետ աշխատող ընկերներին օգնելու փայլուն օրինակ։ Ընկեր Լիխաչևայի օրինակին հետևեցին մեր կոմբինատի շատ ստախանովական բանվորներ։

Ուսումնասիրելով մեր՝ 3-րդ կորպուսի ունեցած հնարավորությունները, ես ընկերներին ցույց տրվող օգնության մասին նախ խոսեցի ենթավարպետների հետ։ Ես հարցն այսպես դրեցի. մեր կորպուսում հետ են մնում 6, 8, 10, 11 և 12-րդ բրիգադաները։ Մյուս, առաջավոր բրիգադաների ենթավարպետները բոլոր հնարավորություններն ունեն նրանց օգնելու, որպեսզի նրանք նույնպես կատարեն իրենց պլանները։ Հնարավո՞ր է այդ անել, թե՞ ոչ։ Հենց այդտեղ առաջավոր բրիգադաների ենթավարպետներից յուրաքանչյուրը պարտավորություն ստանձնեց օգնել հետ մնացող բրիգադաների ենթա-



վարպետներին՝ պլանները կատարելու գործում։

Ապա ես հարց դրի. ինչպե՞ս վարվել հետ մնացող ջուլհակների հետ։ Ստախանովական ենթավարպետ Լ. Ներսիսյանը առաջարկեց, որ ենթավարպետները խոսեն առաջավոր ջուլհակների հետ, որպեսզի նրանք էլ իրենց հերթին օգնեն պլանները թերակատարող ջուլհակներին։ Այդպես էլ արվեց. առաջավոր բրիգադաների ինչպես ենթավարպետները, այնպես և ջուլհակները պարտավորվեցին իրենց փորձը հաղորդել հետ մնացող բրիգադաներին, օգնել նրանց պլանների կատարումը կայուն հիմքերի վրա դնելու համար։

Այսպիսի ընկերական օգնությունը շուտով փայլուն արդյունքներ տվեց. հետ մնացող բրիգադաները շուտով սկսեցին կատարել ու գերակատարել իրենց առաջադրանքները։ Այսպես օրինակ, 12-րդ բրիգադան, որ սիստեմատիկ կերպով թերակատարում էր իր առաջադրանքները, մարտ ամսին պլանը կատարեց 117 տոկոսով, զգալի չափով գե-

բովատարելով նաև ապրիլ ամսվա առաջին կեսի պլանը։ Նույնը կարելի է ասել նաև 10-րդ և մյուս բրիգադների մասին։ Իսկ ամբողջ կորպուսը ապրիլի պլանը կատարեց ամսի 22-ին։

Մեր երկրի առաջավոր, նորարար բանվորների փորձն ուսումնասիրելու և այն մասսայականացնելու գործում մենք մեծ օգնություն ենք սպասում «Ագիտատորի բլոկնոտ»-ից, բայց պետք է ասեմ, որ այդ օգնությունը դեռևս անբավարար է։ «Ագիտատորի բլոկնոտ»-ը չի տպագրում այնպիսի խոր, վերլուծական հոդվածներ արտադրության նորարարների, ասենք Ալեքսանդր Չուտկիխի, Ելենա Կոնոնենկոյի ու Մարիա Ռոժնևայի, Կորաբելնիկովայի և մյուսների աշխատանքի փորձի, նրանց առաջավորության էության մասին, որոնք ուսումնասիրելով, մեզ համար այլևս մութ հարցեր չեն մնան։ Արտադրության մեջ ծավալվող յուրաքանչյուր նոր շարժման վերաբերյալ առաջին բացատրությունը մեզ պետք է տա «Ագիտատորի բլոկնոտ»-ը։



# ՀՈՒՄՔԸ ԽՆԱՅՈՂԱԲԱՐ ԾԱԽՍԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Համկ(բ)Պ 18-րդ համագումարի անվան Մանարան ֆաբրիկայի տեսակավորման գզարանի ագիտատոր Պ. ՊՈՂՈՍՅԱՆԻ ելույթից:

Ես ցանկանում եմ խոսել այն մասին, թե որքանով է ինձ հաջողվել օգնել մեր ցեխի բանվորներին հումքը խնայողաբար ծախսելու և բարձրորակ մանվածքի համար անհրաժեշտ կիսաֆաբրիկատ ապահովելու գործում։

Բարձրորակ մանվածք ստանալու հիմնական նախապայմանն է հանդիսանում այն, թե մեր ցեխը որքանով լավ կմշակի ու կնախապատրաստի բամբակի հումքը։

Երբ հայտնի դարձավ անվանի ենթավարպետ Ալեքսանդր Չուտկիխի հայրենասիրական նախաձեռնությունը, ես այդ մասին մանրամասն խոսեցի մեր ցեխի բանվորների հետ։ Ճիշտ է, մենք բարձր տեսակի բամբակից ապահովում էինք բարձրորակ կիսաֆաբրիկատ ստանալը, բայց այլ էր դրությունը ցածր տեսակի բամբակ օգտագործելիս։ Ես այսպիսի հարց դրի բանվորների ա-

ռաչ. հնարավոր չի՞ արդյոք ցածր տեսակի բամբակից նույնպես ստանալ բարձրորակ կիսաֆաբրիկատ։ Սկզբում այդ բանը տարօրինակ թվաց բանվորներին։ Բայց ես, որպես ցեխի վարիչ, այդ հարցը լավ էի ուսումնասիրել և գիտեի, որ եթե բանվորները ինչպես հարկն է օգտագործեն մեքենաների յուրաքանչյուր մեխանիզմը, աշխատեն ավելի ուշադիր ու կենտրոնացած, ապա կատարելով ցածր տեսակի բամբակի կրկնակի մշակություն, մեր ցեխը մանող մեքենաներին այդ բամբակից նույնպես կտա բարձրորակ կիսաֆաբրիկատ։

Ենթավարպետների օգնությամբ մենք կատարյալ վիճակի բերեցինք մեքենաների բոլոր մեխանիզմները, ապահովեցինք նրանց անխափան աշխատանքը։ Ապա կատարեցինք ցածր տեսակի բամբակի կրկնակի մշակություն և հիանալի արդյունքներ ստացանք։ Բանվորները փորձով համոզվեցին, որ ցածր տեսակի բամբակի կրկնակի մշակություն կատարելով իրենք ոչ միայն բարձրորակ կիսաֆաբրիկատ են ստանում, այլև դրանով զգալի չափով բարձրանում է իրենց աշխատավարձը։ Եվ ահա մեր ցեխի համար ոչ



միայն բարձր, այլև ցածր տեսակի բամբակից ստանդարտին համապատասխանող կիսաֆաբրիկատ ստանալը դարձել է անխախտ կանոն։

Հումքը խնայողաբար ծախսելու համար մեր ցեխում լայն պայքար սկսեցինք ծավալել անվանի բանվորուհիներ Ելենա Կոնոնենկոյի և Մարիա Ռոժնևայի օրինակով։ Հումքի կորուստները մեր ցեխում շատ մեծ չափերի էին հասնում։ Բավական է ասել, որ յուրաքանչյուր ամիս մենք, որպես «անպետք» բամբակ, դուրս էինք թափում միջին հաշվով 40 տոննա հումք։

Հումքը խնայողաբար ծախսելու համար ես բանվորների հետ խոսեցի ոչ թե ընդհանրապես, այլ յուրաքանչյուր ագրեգատի վրա աշխատողներին ցույց տվի, թե որքան և ինչի պատճառով են նրանք կորուստներ տալիս, կոնկրետ հաշվումներ կատարելով պարզաբանեցի, թե այդ կորուստներով նրանք որքան վնաս են պատճառում ֆաբրիկային, մեր երկրին։ Ցեխի կոմունիստների, առաջավոր բանվորների օգնությամբ մենք ամենօրյա խիստ հսկողություն սահմանեցինք բամբակը գետին թափելու, ոտքերի տակ

փչացնելուն վերջ տալու համար։ Շատ չանցած հումքի յուրաքանչյուր կիլոգրամը իր նպատակին ծախսելու պահանջը մեր ցեխի բանվորների համար դարձավ նորմալ աշխատանքի կանոն։ Այժմ մեր ցեխում, ուր օրական տասնյակ տոննաներով բամբակ է մըշակվում, դուք գետնին ընկած ոչ մի փաթիլ բամբակ չեք տեսնի։ Ներկայումս, երբ բանվորները ցեխում հումքի կորստի դեպքեր են նկատում, իրենք են ահազանգում։

Այսպիսով, մենք հասանք այն բանին, որ ոչ միայն իսպառ վերացրինք հումքի անտեղի կորուստները, այլև զգալի չափով կրճատեցինք այն կորուստները, որոնք նախատեսվում են պլանով։ Կորուստների միայն այդ կրճատումից մեր ցեխը յուրաքանչյուր ամիս տալիս է մոտ 28 հազար ռուբլու խնայողություն։

Ինչ վերաբերում է «Ագիտատորի բլոկնոտ»-ի կողմից մեզ ցույց տրվող օգնությանը, ապա ես պետք է ասեմ հետևյալը։ Հումքի խնայողության և այլ հարցերի մասին բանվորների հետ զրուցելիս մենք մեծ պահանջ ենք զգում կոնկրետ փաստերի և թվերի։ Օրինակի համար, եթե բամբակացան



կոլխոզնիկը մեկ հեկտարից ստանում է 20—25 ցենտներ հումք, ապա նա որքա՞ն աշխատանք է թափում դրա վրա, որքա՞ն աշխատանք ու ծախս է կատարում այդքան բամբակ ստանալու համար ՄՏ կայանը։ Ձեռքի տակ ունենալով այդ թվերը, մենք կկարողանանք բանվորներին ավելի պատկերավոր կերպով ցույց տալ, թե ինչ արժե այն կիլոգրամ բամբակը, որ նա իզուր տեղը փչացրեց, կամ այն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիան, կիլոգրամ վառելիքը և այլ նյութեր, որ նա իզուր տեղը ծախսեց։ Իսկ այդպիսի թվեր ու փաստեր «Ագիտատորի բլոկնոտ»-ում համարյա թե չեն հրապարակվում։

—О—

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԽՈՍՔԻ ՈՒԺԸ

Գուլպա-տրիկոտաժ ֆաբրիկայի կետլովկայի ցեխի ագիտատոր Մ. ՍԱՐԳՍՅԱՆԻ ելույթից:

*Ես ուզում եմ խոսել այն մասին, թե մենք, ագիտատորներս, մեր ուղղակի ասված, ճշմարտացի, համոզեցուցիչ խոսքով ինչպես կարող ենք բանվորների գիտակցությանը հասցնել մեր Հայրենիքի բարգավաճմանն ու հզորությանը նպաստող ամեն մի նոր նախաձեռնության նշանակությունը, մոբիլիզացնել նրանց ուժերը առաջավորների օրինակով աշխատելու համար: Իմ աշխատանքի փորձից բերեմ մի քանի օրինակ:*

*Մեր ֆաբրիկայում, հատկապես մեր ցեխում, մենք շատ էինք խոսում խնայողության և հատկապես ասեղների ու կարի թելի խնայողության մասին: Այդ մասին եղել են ադմինիստրացիայի, ինչպես նաև իմ, որպես ցեխի պետի բազմաթիվ կարգադրությունները: Բայց այդ բոլոր խոսակցություններն ու կարգադրությունները չէին բերում այն արդյունքին, որին մենք հասել ենք այսօր Լիդիա Կորաբելնիկովայի հայրենասիրական*



*նախաձեռնությունը մասսայականացնելու, այն մեզ մոտ կիրառելու հետևանքով:*

*Ինչպես հայտնի է, Մոսկվայի «Փարիզյան կոմունա» Կոշիկի ֆաբրիկայի երիտասարդ ստախանովականուհի Լիդիա Կորաբելնիկովան առաջարկեց ամսվա մեջ մեկ օր աշխատել խնայած հումքի հաշվին և ինքը տվեց դրա առաջին օրինակը: Այդ առաջարկությունը լայն արձագանք գտավ մեր երկրի գործարաններում ու ֆաբրիկաներում: Զրույցների ժամանակ ես բանվորներին պատմեցի Կորաբելնիկովայի առաջարկության մասին, նշելով նաև, որ հենց մեր քաղաքի՝ Լենինականի մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների բանվորներ արդեն գործով են պատասխանել այդ հայրենասիրական կոչին: Կոնկրետ օրինակներով ցույց տվեցի նաև, թե մեզ մոտ ինչպես կարելի է խնայել հիմնական նյութերը՝ ասեղները և կարի թելը: Այս բացատրություններից հետո ես ասի, որ մեր ցեխը հնարավորություն ունի խնայած ասեղների հաշվին ամսվա մեջ աշխատել երեք օր, իսկ թելի հաշվին՝ մեկ օր: Ապա ես բանվորներին առաջարկեցի— թող յուրաքանչյուրը մտածի, թե ինչ միջոցներով կարելի է կատարել այդ խնայողությունը, անի իր առաջարկությունները, որոնք մենք կհրա-*

*պարակենք պատի թերթում, քննության կառնենք զրույցների ժամանակ։*

*Եվ ահա ցեխում խնայողության համար պայքարել սկսեց յուրաքանչյուր բանվոր, ստացվեցին բազմաթիվ առաջարկություններ։ Արդյունքները գերազանցեցին մեր բոլոր սպասելիքները. ապրիլի 15-ից սկսած մինչև ամսվա վերջը ցեխն աշխատեց խնայած ասեղների և երեք օր էլ խնայած թելի հաշվին։*

*Ահա նաև մեկ ուրիշ օրինակ։ Մեր ցեխի կարող բանվորներից Վ. Սարգսյանը շարունակ ցածրորակ արտադրանք էր տալիս։ Ես, որպես ցեխի պետ, նրան հաճախակի էի դիտողություններ անում, բայց նա չէր բարձրացնում իր աշխատանքի որակը։ Հունվար ամսին Վ. Սարգսյանը 300 ռուբլով պակաս աշխատավարձ ստացավ, քան նրա կողքին աշխատող և նույն քանակի արտադրանք տվող մյուս բանվորուհին։ Ես իմ զրույցներից մեկի ժամանակ խոսեցի Սարգսյանի աշխատանքի մասին և ասի, որ նա իր կարած ցածրորակ գուլպաներով յուրաքանչյուր օր պետությանը վնաս է տալիս 2—3 հարյուր ռուբլի, իսկ ինքը անձամբ ամսական պակաս է վաստակում մոտ 300 ռուբլի։ Միաժամանակ ես բանվորներին ցույց տվի*



*Սարգսյանի կարած ցածրորակ գուլպաները, հարցնելով, թե նրանցից ո՞վ խանութում կգնի այդպիսի գուլպաներ։ Այդ զրույցը խորապես ազդեց Վ. Սարգսյանի վրա, նա խոստացավ այսուհետև տալ միայն բարձրորակ արտադրանք և հենց հաջորդ ամսին կատարեց իր խոստումը։ Այժմ նրա կարած գուլպաների 97 տոկոսը բարձր որակի է։*

*Անցնելով «Ագիտատորի բլոկնոտ»-ի կողմից մեզ ցույց տրվող օգնության հարցին ես պետք է ասեմ հետևյալը. ժուռնալը պետք է ավելի հաճախակի տպագրի միջազգային հարցերին նվիրված հոդվածներ, աշխատանքի պրակտիկա դարձնի հաճախակի գործածվող խրթին բառերի ու տերմինների բացատրություններ տալը, հետաքրքիր տեղեկություններ հրապարակի սովետական գիտության և տեխնիկայի ասպարեզում ձեռք բերված նվաճումների մասին։*

—О—

# ԳԼԽԱՎՈՐԵԼ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆԸ

Գուլպա-տրիկոտաժ ֆաբրիկայի նախապատրաստական ցեխի ագիտատոր Ա. ԳԱԼՍՏՅԱՆԻ ելույթից:

*Արտադրության բարձրացմանը նվիրված ամեն մի նոր նախաձեռնություն մեծ արձագանք է գտնում մեր գործարաններում ու ֆաբրիկաներում։ Ծանոթանալով ստախանովյան աշխատանքի նոր մեթոդներին ու ձևերին, բանվորներն սկսում են իրենց մոտ կիրառել այդ։*

*Ես ուզում եմ խոսել այն մասին, թե ինչպես մեր ցեխում սկսվեց և ծավալվեց չուտկիխյան շարժումը՝ բարձրորակ արտադրանք տալու համար։*

*Մինչև անցյալ տարվա աշունը մեր ցեխում բրիգադային աշխատանք չկար և մեր արտադրության բնույթն այնպես էր, որ թվում էր թե մեզ մոտ աշխատանքի այդպիսի կազմակերպումը միտք չունի։ Երբ թերթերում, այդ թվում նաև «Ագիտատորի բլոկնոտում» հրապարակվեց անվանի ստախանովական Ալեքսանդր Չուտկիխի նախաձեռնության և*



*փորձի մասին, ես իմ զրույցներից մեկը նվիրեցի այդ հարցին և բանվորների առաջ խնդիր դրեցի որպեսզի յուրաքանչյուրը մտածի, թե ինչպես ինքը կարող է հասնել այն բանին, որ տա միայն բարձրորակ արտադրանք։*

*Հաջորդ օրը ինձ մոտ եկան ցեխի վարպետի օգնականներ Ա. Հակոբյանը և Ս. Սարգսյանը, ստախանովական բանվորուհիներ Հ. Գրիգորյանը և Ա. Հովակիմյանը և հայտնեցին, որ իրենք ցանկանում են ցեխում կազմակերպել բարձր որակի համար պայքարող 2 բրիգադա։ Ես հարցրի, թե ինչպե՞ս են նրանք պատկերացնում բրիգադային աշխատանքը մեր ցեխում և ինչ նպատակ ունի այդ։ Նրանք պատասխանեցին, որ ինքնակամ կերպով մտնելով այդ բրիգադաների մեջ և սոցիալիստական մրցությամբ պարտավորություն ստանձնելով տալ միայն բարձր որակի արտադրանք, բանվորները փոխադարձ պատասխանատվություն կզգան բրիգադայի և միմյանց նկատմամբ, կօգնեն իրար՝ վերցրած պարտավորությունը կատարելու համար։*

*Նույն օրը կազմակերպեցինք այդ երկու բրիգադաները՝ յուրաքանչյուրը 7 մարդուց բաղկացած։ Եվ ահա նոր ձևով աշխատելու*

հենց առաջին ամսին երկու բրիգադաներն էլ փայլուն արդյունքների հասան։ Ա. Հակոբյանի բրիգադան առաջին տեսակի արտադրանք տվեց 99 տոկոսով, իսկ Ս. Սարգսյանի բրիգադան՝ 98 տոկոսով։ Խոշոր չափով բարձրացավ բրիգադայի բոլոր անդամների աշխատավարձը։

Երբ այս բրիգադայի աշխատանքի արդյունքները մասսայականացրինք ցեխում, բրիգադային սիստեմայով աշխատելու և բարձր որակի համար պայքարող բրիգադաներում ընդգրկվելու համար ցանկություն հայտնեցին մեծ թվով բանվորներ։ Հաջորդ ամսին այդ բրիգադաներում ընդգրկվեցին արդեն 24 մարդ, իսկ ևս մեկ ամիս հետո ամբողջ ցեխն սկսեց աշխատել նոր ձևով՝ պայքարելով բարձրորակ արտադրանքի ցեխի կոչմանը արժանանալու համար։ Այժմ մեր ցեխն իր պլանները կատարում է 115—120 տոկոսով, իսկ արտադրանքի 99 տոկոսը առաջին տեսակի է։



# ԱԶԳԱԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՄԵՋ ՏԱՐՎՈՂ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՄԱՍԻՆ

Շոգեքարշային դեպոյի ագիտատոր Վ. ԽԱՉԱՏՐՅԱՆԻ ելույթից

Որպես ագիտատոր ես աշխատում եմ այս տարվա սկզբից, երբ սկսվեցին ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստական աշխատանքները։ Ինձ հանձնարարվեց ագիտացիոն-մասսայական աշխատանք տանել այն շենքերի բնակիչների մեջ, ուր ապրում են մեր դեպոյի աշխատողների ընտանիքները։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններն ավարտվելուց հետո էլ ես նույն կարգով շաբաթը երկու անգամ լինում եմ իմ ունկնդիրների մոտ և շարունակում ագիտացիոն աշխատանքը։ Միաժամանակ ես մեր լվացման ցեխի ագիտատորն եմ։

Ես կարծում եմ, որ մենք, ագիտատորներս, ազգաբնակչության, տնային տնտեսուհիների հետ զրուցելիս մյուս բոլոր հարցերի հետ միասին պետք է նրանց ծանոթացնենք մեր քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների արտադրական կյանքի հետ, պատմենք նրանց ձեռք բերած նվաճումների

մասին։ Իմ զրույցների ընթացքում ես այդպես էլ անում եմ։ Իմ ունկնդիրները ճանաչում են մեր դեպոյի համարյա բոլոր աշխատողներին և երբ ես պատմում եմ դեպոյի անվանի մարդկանց լավագույն աշխատանքի, արտադրական հաջողությունների մասին, այդ մեծ խանդավառություն է առաջացնում տնային տնտեսուհիների մեջ, որոնցից շատերի ընտանիքի անդամների մասին ես հիշատակում եմ։

Ագիտացիոն աշխատանք տանելով ազգաբնակչության մեջ մենք պետք է մանրամասն հետաքրքրվենք նաև մեզ ամրացված տների ապրողների կենցաղային պայմաններով, լսենք նրանց պահանջները, միջամտենք, որպեսզի դրանք բավարարվեն։ Վերջերս, օրինակ, երբ ես իմ ունկնդիրներին հարցրի, թե ինչ վիճակում են գտնվում նրանց բնակելի շենքերը, նրանք ինձ ցույց տվեցին միջանցքների լուսամուտները, որոնց ապակիների մեծ մասը ջարդված էին, ասին, որ ջրամատակարարման սիստեմը անկանոն է գործում։ Ես այդ մասին հայտնեցի մեր պարտկոմի քարտուղարին, որի միջամտությամբ դիրեկցիան կատարեց վերոհիշյալ շենքերի վերանորոգումները։

Որպես երիտասարդ, մեծ փորձ չունեցող



ագիտատոր, ես օգնության շատ կարիք եմ զգում և այդ օգնությունն առանձնապես սպասում եմ «Ագիտատորի բլոկնոտ»-ից։ Ճիշտ է, ժուռնալը բավականին քանակությամբ նյութեր է տպագրում զանազան բնագավառներում աշխատող ագիտատորների աշխատանքի փորձից, բայց այդ դեռ քիչ է և հարցի մի կողմն է։ Մեզ անհրաժեշտ է նաև, որպեսզի «Ագիտատորի բլոկնոտ»-ը հաճախակի տպագրի այնպիսի մեթոդական հոդվածներ, որտեղ խոսվի թե ինչպես կազմակերպել զրույցը այս կամ այն հարցի մասին, ինչպես օգտագործել պարբերական մամուլը, ինչպես կազմակերպել զրույցը երիտասարդ, արտադրության մեջ նոր ընդունված բանվորների հետ, մեթոդական ցուցումներ տրվի ագիտատորի լեզվի մասին և այլն։

«Ագիտատորի բլոկնոտ»-ը մեզ խոշոր չափով օգնած կլինի, եթե հաճախակի հրապարակի մեր մեծ առաջնորդների՝ Լենինի ու Ստալինի ասույթները, նրանց տված ցուցումները աշխատանքի արտադրողականության բարձրացման, սոցիալիստական մրցության մասին, սոցիալիստական սեփականության պաշտպանման, խնայողության ռեժիմի մասին, աշխատանքային կարգապահության մասին։



# ՊԱՅՔԱՐՈՒՄ ԵՆ ԲԱՄԲԱԿԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՀԱՄԱՐ

Հոկտեմբերյանի շրջանի Սովետական գյուղի «Կարմիր աստղ» կոլխոզը անցյալ տարի լուրջ հաջողությունների հասավ բամբակի դաշտերի բերքատվության բարձրացման գործում։ Կոլխոզը բամբակի ցանքերի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 35,3 ցենտներ միջին բերք, իսկ առանձին օղակների ցանքերի բերքատվությունը հասավ 65—70 ցենտների։

Կոլխոզի ձեռք բերած այս հաջողությունների մեջ իրենց պատվավոր տեղն ունեն նրա ագիտատորները։ Կոլխոզի ագիտկոլեկտիվը, որի ղեկավարն է ընկ. Ե. Զաքարյանը, անցյալ տարի գարնան գյուղատնտեսական աշխատանքների նախապատրաստության շրջանից սկսած մինչև բերքահավաքի լրիվ ավարտումը կոլխոզնիկների մեջ ամենօրյա ագիտացիոն-մասսայական լայն աշխատանք տարավ, օգնելով կոլխոզնիկներին բարձր բերք ստանալու գործում։

Օգտագործելով նախորդ տարիների փորձը,



կոլխոզի ագիտկոլեկտիվն այս տարի նույնպես բամբակի բարձր բերքի համար մղվող պայքարը դարձրել է իր կարևորագույն խնդիրը։ Ագիտկոլեկտիվի սիստեմատիկ կերպով տեղի ունեցող խորհրդակցություններում ագիտատորներին ցուցումներ է տրվում, թե առաջիկա շաբաթում, կամ տասնօրյակում դաշտային ինչ աշխատանքների վրա պետք է կենտրոնացնել կոլխոզնիկների ուշադրությունը, ինչպես մոբիլիզացնել նրանց ուժերը տվյալ աշխատանքները ժամկետին և բարձր որակով կատարելու համար։

Ագիտկոլեկտիվն այնպես է դասավորել իր ուժերը, որ ագիտատորներն անմիջապես կապված են բամբակագործական բրիգադաների հետ, տեղյակ են լինում յուրաքանչյուր օղակի, անհատ կոլխոզնիկի աշխատանքին։ Այդպիսով նրանք կարողանում են բարձր բերքի համար մղվող իրենց ագիտացիան տանել կոնկրետ ձևով, կապելով տվյալ օղակի կամ բրիգադայի առօրյա աշխատանքի հետ, կարողանում են հենց դաշտում, տեղն ու տեղը կանխել, վերացնել նկատվող թերությունները։

Բերենք մի քանի օրինակներ։

Բամբակի ցանքը հաջող ավարտելուց հետո կոլխոզն այժմ ձեռնամուխ է եղել դաշ-

տերի մշակմանը։ Աշխատանքների այս շըր-ջանում ագիտատորներն իրենց ագիտացիան տանում են լիարժեք հեկտարներ ունենալու հարցի շուրջը։ Ահա թե ագիտատոր Գուրգեն Հովհաննիսյանը մայիսի 4-ին ինչպես անց-կացրեց այդ հարցին նվիրված իր զրույցը։ Կարդալով լիարժեք հեկտարներ ստանալու վերաբերյալ թերթում տպագրված հոդվածը, նա ասաց.

— Ինչ որ ասված է այս հոդվածում, այդ ամենը մենք լրիվ չափով կարող ենք կիրա-ռել մեր բրիգադայում։ Վերցնենք անցյալ տարվա մեր փորձը։ Անցյալ տարի Հաչուշ Վալիևայի օղակի բամբակի ամբողջ դաշտը լիարժեք էր և ոչ մի մետր բաց տեղ չկար։ Դրա հետևանքով նա հեկտարից ստացավ 68 ցենտներ բամբակի հումք։ Իսկ օղակա-վարուհի Աղութ Եղիազարյանի օղակում բաց տարածություններ շատ կային։ Եվ հետևանքն այն եղավ, որ չնայած Աղութը վատ չաշխա-տեց, սակայն հեկտարից ստացավ 40 ցենտներ բերք։

Իսկ ի՞նչից է, որ մեր հեկտարները կորց-նում են իրենց լիարժեքությունը,— իր զրույցը շարունակում է ագիտատորը։ Օրինակի համար, մենք բամբակի քաղ-հան-փխրեցում ենք կատարում 7—8 ան-



գամ. եթե մեզանից ամեն մեկը բամբա-կի մշակման ժամանակ յուրաքանչյուր շար-քում փչացնի նույնիսկ 2 բույս, ապա վե-գետացիայի ամբողջ շրջանում մեկ հեկտա-րի վրա եղած բույսերի քանակը կպակասի 2—3 հազար հատով։ Իսկ եթե սրան գումա-րենք, որ տրակտորիստն էլ իր անբարե-խղճության հետևանքով կուլտիվացիայի ժա-մանակ կարող է բույսեր փչացնել, և ապա ամեն մի շարքից 3—4 բույս էլ կարող են ոչնչանալ հիվանդություններից կամ վնա-սատուների կողմից, ապա կստացվի այն, որ մենք ինքներս մեր ցանքսերի յուրաքան-չյուր հեկտարի վրա եղած բույսերի 25 տո-կոսը կորստյան կտանք։

Այժմ ես ձեզ եմ հարցնում,— ավարտում է իր զրույցը ագիտատոր Հովհաննիսյանը,— մենք հնարավորություն ունե՞նք կանխելու այդ կորուստները և կատարել մեր վերցրած պարտավորությունը, թե՞ ոչ։

Հետաքրքիր ու բովանդակալից են անց-նում նաև ագիտատոր Մուշեղ Ստեփանյա-նի՝ բամբակի մշակման հարցերին նվիրված զրույցները։ Իր վերջին զրույցներից մեկում, պարզաբանելով բամբակի մշակման մի քա-նի ագրոկանոնների կիրառման նշանակու-թյունը, ագիտատորը հարցրեց իր ունկնդիր-

ներին,—իսկ ի՞նչ առաջարկություններ ունեն նրանք՝ բամբակենու մշակումը ավելի լավ կատարելու համար։ Այդ հարցը կոլխոզնիկների մեջ մեծ հետաքրքրություն առաջացրեց։ Արվեցին մի շարք առաջարկություններ, որոնք ագիտատորը գրի առավ՝ դրանց մասին գյուղատնտեսի հետ խորհրդակցելու համար։ Առանձնապես հետաքրքիր էր կոլխոզնիկուհի Աստղիկ Հակոբյանի առաջարկությունը։ Նա ասաց, որ անցյալ տարի ինքը փոքր տարածության վրա փորձ կատարեց և բամբակենու սնուցումը սկսեց ոչ թե հունիսին, այլ մայիսին և լավ արդյունք ստացավ, ուստի ինքն առաջարկում է, որպեսզի իրենց օղակը և ամբողջ բրիգադան այս տարի սնուցումն սկսեն մայիս ամսին։ Կոլխոզնիկուհի Հակոբյանի այդ առաջարկությունը ընդունվեց։

Բամբակի բարձր բերքի համար մղվող պայքարում «Կարմիր աստղ» կոլխոզի ագիտկոլեկտիվը լայնորեն օգտագործում է նաև ագիտացիոն-մասսայական աշխատանքի մյուս ձևերը— սիստեմատիկ կերպով լույս է ընծայում պատի թերթը, իլյիչովկաները, սխեմաների, դիագրամաների, պլակատների միջոցով պարզաբանում է բամբակենու մշակման ագրոկանոնների կիրառման հետևանքով ստացված արդյունքները։

Կ. ՊՈՂՈՍՅԱՆ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

Ա. Ս. ՄԱԿԱՐԵՆԿՈ.— Մանկավարժական ընտիր երկեր: *446 էջ, գինը 26 ռ. 50 կոպ.։*

ԱԲԻԳ ԱՎԱԳՅԱՆ.— Պատմվածքներ: *117 էջ, գինը 2 ռ. 80 կոպ.։*

Ա. Ս. ԴԱՆՑԻԳԵՐ.— Էլեկտրական լամպ: *50 էջ, գինը 2 ռ.։*

Ա. Գ. ԱԴՈՅԱՆ.— Ի՞նչ պետք է իմանա կոլխոզնիկը էլեկտրական էներգիայի մասին: *107 էջ, գինը 2 ռ. 20 կոպ.։*

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ